*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

# ԹԱԹԱՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԱՅՆ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ

*ՀամԿ(բ)Պ Կենտկոմը որոշում է կայացրել «Թաթարական պարտիական կազմակերպության մասսայական-քաղաքական և իդեոլոգիական աշխատանքի վիճակի ու այն բարելավելու միջոցառումների մասին»: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը նշել է Թաթարական ԱՍՍՌ-ում մասսայական-քաղաքական ու իդեոլոգիական աշխատանքի անուշադրության մատնված լինելը և անբավարար է ճանաչել այդ աշխատանքի ղեկավարումը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմի կողմից: Թաթարիայի պարտիական կազմակերպությունները, ինչպես մատնանշված է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ, պատշաճ ուշադրություն չեն նվիրում մարքսիստական-լենինյան թեորիան պարտիական, սովետական և կոմերիտական կադրերի կողմից ուսումնասիրելու գործին: Թաթարական պարտիական կազմա-*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

## ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

# ԹԱԹԱՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԱՅՆ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը որոշում է կայացրել «Թաթարական պարտիական կազմակերպության մասսայական-քաղաքական և իդեոլոգիական աշխատանքի վիճակի ու այն բարելավելու միջոցառումների մասին»: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը նշել է Թաթարական ԱՍՍՌ-ում մասսայական-քաղաքական ու իդեոլոգիական աշխատանքի անուշադրության մատնված լինելը և անբավարար է ճանաչել այդ աշխատանքի ղեկավարումը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմի կողմից: Թաթարիայի պարտիական կազմակերպությունները, ինչպես մատնանշված է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ, պատշաճ ուշադրություն չեն նվիրում մարքսիստական-լենինյան թեորիան պարտիական, սովետական և կոմերիտական կադրերի կողմից ուսումնասիրելու գործին: Թաթարական պարտիական կազմա-

կեցության մեջ անուշադրության է մատ-նըված մարքսիստական-լենինյան թեորիայի ինքնուրույն ուսումնասիրումը պարտիական և սովետական կադրերի կողմից, շատ քիչ դասախոսություններ են կարդացվել և կոնսուլտացիաներ անցկացվել՝ բոլշևիկյան պարտիայի պատմությունն ու թեորիան ուսումնասիրողներին օգնելու. Համար բավական թվով պատրաստված պրոպագանդիստների բացակայության դեպքում թույլ է տրվել բազմաթիվ քաղաքական խմբակներ ստեղծելու պրակտիկան: Համկ(բ)Պ Թաթարական մարզկոմը աշխատանք չի կազմակերպել շրջանային պարտիական աշխատողների, պրոպագանդիստների և թերթերի խմբագիրների մարքսիստական-լենինյան պատրաստության ու վերապատրաստության ուղղությամբ, որի հետևանքով նրանցից շատերը լըջորեն հետ են մնացել թեորիական տեսակետից և ի վիճակի չեն հաջողությամբ քաղաքական աշխատանք կատարել բնակչության մեջ: Համկ(բ)Պ մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները թույլ են տվել մի վնասակար պրակտիկա. նրանք պրոպագանդիստական ու լրագրային աշխատողներին կտրել են իրենց անմիջական աշխատանքից և այդ աշխատողներին որ-



պես լեկտորներ երկար ժամանակով կցել են գյուղսովետներին ու կոլխոզներին. որի հետևանքով-փաստորեն լիկվիդացվել է պարտիական կազմակերպությունների պրոպագանդիստական ապարատը և թուլացել մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքը: Պարտիական կազմակերպությունները բավականաչափ չեն օգտագործում սովետական ինտելիգենցիայի ուժերը՝ բնակչության մեջ քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանք կատարելու համար:

Համկ(բ)Պ Թաթարական մարզկոմը անբավարար է ղեկավարել ռեսպուբլիկական և շրջանային թերթերի աշխատանքը: Ռեսպուբլիկայի թերթերը դեռ չեն դարձել քաղաքական աշխատանքի իսկական կազմակերպիչներ, մասսաների մեջ վատ են մասսայականացնում արդյունաբերական ու կոլխոզային արտադրության առաջավորների փորձը. թույլ են լուսաբանում պարտիական ու կոմերիտական կյանքը: «Կրասնայա Թաթարիա» ռեսպուբլիկական թերթը լուրջ սխալներ է թույլ տվել ազգային-քաղաքական և միջազգային հարցերին նվիրված հոդվածներում:

Թաթարիայում, ինչպես մատնանշված է

Համկ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ, քաղաքական ինֆորմացիան հեռու է քաղաքային և գյուղական բնակչության բոլոր խավերին ընդգրկելուց: Շրջանային պարտիական-սովետական շատ աշխատողներ բնակչության առջև հանդես չեն գալիս քաղաքական զեկուցումներով: Չափազանց հազվադեպ են զեկուցումներն ու զրույցները թաթար բանվորների ու կոլտնտեսականների համար՝ նրանց մայրենի լեզվով: Ապահովված չէ ամենօրյա քաղաքական ինֆորմացիան կանանց բնակչության համար: Համկ(բ)Պ շրջկոմները ագիտատորների մեջ սիստեմատիկ աշխատանք չեն կատարում, նրանց անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս, թույլ են կատարում կոլխոզային շինարարության հիմունքների պրոպագանդան ու կոլխոզներում աշխատանքային կարգապահության և հանրային սեփականությունն ամրացնելու ագիտացիան: Թաթարական ԱՍՍՌ-ում անբավարար են աշխատում կուլտուր-լուսավորական հիմնարկները: Շատ խրճիթ-ընթերցարաններ ու գրադարաններ փակ են, գրադարանային ֆոնդերը ցիր ու ցան են արվում, կինոսարքերի մեծ մասը անգործության է մատնված, շատ կոլխոզներում կինո չի եղել պատե-



րազմի ամբողջ ժամանակվա ընթացքում: Ռեսպուբլիկայի 29 շրջաններում ռադիոհաղորդում չի կազմակերպվել, շատ գյուղսովետներում հեռախոսային լարերը չեն օգտագործվում ռադիոհաղորդումների համար:

Համկ(բ)Պ Թաթարական մարզկոմը անբավար է ղեկավարել գրողների և արվեստի գործիչների աշխատանքը, բավարար չափով չի վերահսկել արվեստի հիմնարկների ռեպերտուարին, աշխատանք չի կազմակերպել ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական դաստիարակության ուղղությամբ, որի հետևանքով ռեսպուբլիկայում տեղի են ունեցել իդեոլոգիական բնույթի կոպիտ լուրջ սխալներ՝ թաթարական ժողովրդի պատմության լուսաբանման, ինչպես նաև թաթարական գրականության և արվեստի ասպարեզում:

Համկ(բ)Պ Կենտկոմը Համկ(բ)Պ Թաթարական մարզկոմին պարտավորեցրեց՝ վերացնել մասսայական-քաղաքական և իդեոլոգիական աշխատանքի մատնանշված թերությունները և առաջարկեց Թաթարիայի մարզկոմին ու պարտիական կազմակերպություններին՝ վերջ տալ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի անտեսմա-

նը, լայնորեն ծավալել մասսայական-քաղաքական աշխատանքը բնակչության մեջ և բարձրացնել իդեոլոգիական ու քաղ-դաստիարակչական աշխատանքի մակարդակը ուսուցչության պարտիական կազմակերպություններում ու ինտելիգենցիայի մեջ: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը մատնանշեց, որ մասսայական-քաղաքական և իդեոլոգիական աշխատանքի արմատական բարելավումը պետք է դառնա Թաթարական ԱՍՍՌ-ի առջև ծառացած, տնտեսական-քաղաքական խնդիրները կատարելու նպատակով, աշխատավորներին մոբիլիզացնելու կարևորագույն միջոցը:

Ուսուցչության պարտիական-սովետական կադրերի և ինտելիգենցիայի գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու նպատակով, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին առաջարկեց պարտիական կազմակերպություններում լայն աշխատանք ծավալել պարտիայի անդամների ու թեկնածուների կողմից բոլշևիկյան պարտիայի պատմությունը և թեորիան ուսումնասիրելու ուղղությամբ. վերականգնել պարտկազմակերպություններում պարտիական, սովետական ու կոմերիտական կադրերի կողմից մարքսի-



ստական-լենինյան թեորիան ինքնուրույն ուսումնասիրելու մեթոդը, մարքսիստական-լենինյան թեորիան ուսումնասիրողներին օգնելու համար դասախոսություններ և կոնսուլտացիաներ կազմակերպել մարքսիզմ-լենինիզմի հարցերի շուրջը. աշխատանք ծավալել գյուղական ու քաղաքային ինտելիգենցիային մարքսիստական-լենինյան դաստիարակություն տալու ուղղությամբ. Կազանի մարքսիզմ-լենինիզմի գիշերային համալսարանի կազմում բաժիններ կազմակերպել գյուղական աշխատողների ու արվեստի աշխատողների համար. քաղաքներում ու շրջանային կենտրոններում ինտելիգենցիայի համար մարքսիստական-լենինյան թեորիային նվիրված դասախոսություններ ու կոնսուլտացիաներ կազմակերպել ՀամԿ(բ)Պ մարզկոմի դասախոսների և ԲՈՒՀ-երի դասախոսների ուժերով:

Դրա հետ միասին, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին հանձնարարեց կազմակերպել շրջանային գիշերային պարտիական դպրոցներ՝ շրջանային կենտրոնների պարտիական ու սովետական աշխատողների, պարտիական ու կոմերիտական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների համար. շրջանային

պարտիական դպրոցների ծրագրի մեջ մըտ-
ցընել «Համկ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» (ըստ գլուխների), ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին» գրքի, աշխարհի քաղաքական քարտեզի, պարտիական ու սովետական շինարարության հարցերի ուսումնասիրումը, շրջանային երեկոյան պարտիական դպրոցներում սահմանել ուսման 6—8 ամսվա տևողություն, շաբաթական 1—2 պարապմունք և դպրոցի ղեկավարումը հանձնել պարտիայի առավել պատրաստված անդամների: Համկ(բ)Պ Կենտկոմը առաջարկեց ձմեռվա ժամանակաշրջանի համար (1944 թվի դեկտեմբերի 1-ից) գյուղերում ընդարձակել սկզբնական պարտիական կազմակերպությունների կից քաղդպրոցների ցանցը՝ գյուղական կոմունիստների ու կոմերիտականների ուսուցման համար, քաղդպրոցներում սահմանել՝ ուսման 3—4 ամսվա տևողություն, շաբաթական 1—2 պարապմունք. քաղդպրոցների ծրագրի մեջ մտցնել «Համկ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» (ըստ հիմնական փաստաների) ու ընկեր Ստալինի «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի



մասին» գրքի ուսումնասիրումը, և գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունների կից քաղդպրոցների ղեկավարումը հանձնել պարտիայի շրջկոմների հաստիքային պրոպագանդիստներին:

Նշելով, որ Թաթարական ԱՍՍՌ-ում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը պատշաճ հիմքի վրա դնելու գործում լուրջ խոչընդոտ է հանդիսանում պարտիական և պրոպագանդիստական աշխատողների թեորիական անբավարար պատրաստությունը, Համկ(բ)Պ Կենտկոմը Համկ(բ)Պ Թաթարական մարզկոմին առաջարկեց Կազանում կազմակերպել ռեսպուբլիկական պարտիական դպրոց [illegible] մեկ տարվա տևողությամբ՝ շրջանային և քաղաքային պարտիական աշխատողներին վերապատրաստելու համար. այդ դպրոցի կազմում ստեղծել պրոպագանդիստական բաժին՝ շրջանային պրոպագանդիստներին ու լրագրային աշխատողներին վերապատրաստելու համար և կոմերիտական բաժին՝ ՀամԼԿԵՄ քաղկոմների ու շրջկոմների քարտուղարներին վերապատրաստելու համար, ինչպես նաև կազմակերպել Կազանում պրոպագանդիստների ռեսպուբլիկական երկամսյա դասընթացներ, որտեղ ըն-

դառնել քաղկոմների ու շրջկոմների հաստիքային բոլոր պրոպագանդիստներին և արտահաստիքային պրոպագանդիստների խմբակը՝ պատրաստելով նրանց շրջանային պարտիական դպրոցները և գյուղի քաղդպրոցները ղեկավարելու աշխատանքի համար: ՀամԿ(բ)Պ կենտկոմը ՀամԿ(բ)Պ մարզկոմին առաջարկել է նաև ՀամԿ(բ)Պ քաղկոմներին կից կազմակերպել պրոպագանդիստների սեմինարների աշխատանք, այդ սեմինարներին մասնակից դարձնելով պարտիական և կոմերիտական դպրոցների ու խմբակների ղեկավարներին, և տարեկան առնվազն երկու անգամ կազմակերպել պրոպագանդիստական աշխատողների ռեսպուբլիկական երկշաբաթյա սեմինարներ՝ նպատակ ունենալ բարձրացնել նրանց թեորետիկական մակարդակը և ընդհանրացնել պրոպագանդիստական աշխատանքի փորձը:

ՀամԿ(բ)Պ կենտկոմը իր որոշման մեջ նշում է, որ անհրաժեշտ է թերթերը գործնականորեն դարձնել մասսաներում կուսակցական քաղաքական աշխատանքի կարևորագույն կենտրոններ և պարտավորեցրել ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին՝ ուժեղացնել ռեսպուբլիկական, քաղաքային



ու շրջանային թերթերի նկատմամբ վերահսկողությունը և թերթերի խմբագրությունների ղեկավարումը: ՀամԿ(բ)Պ մարզկոմի բյուրոյում քննարկել ռեսպուբլիկական թերթերի աշխատանքի պլանները. մարզկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում վերահսկողություն կազմակերպել բոլոր թերթերի աշխատանքի նկատմամբ, յուրաքանչյուր թերթի մասին առնվազն երեք ամիսը մի անգամ տեղեկություններ ուղարկելով շրջկոմները. ռեսպուբլիկական թերթերում սիստեմատիկաբար տեսություններ հրապարակել շրջանային թերթերի մասին. շրջանային թերթերի աշխատողների մեջ փորձի փոխանակման և նրանց որակավորումը բարձրացնելու նպատակով ռեսպուբլիկական թերթերի խմբագրություններին կից կազմակերպել շրջանային թերթերի խմբագիրների և խմբագրությունների քարտուղարների սեմինարներ: ՀամԿ(բ)Պ կենտկոմը ՀամԿ(բ)Պ մարզկոմին առաջարկել Թաթարիայի ռեսպուբլիկական թերթերում վերականգնել պարտիական կյանքի բաժինները ու պրոպագանդայի բաժինները և հանձնարարել թերթերում հրապարակել թեորետիկական, քաղաքական և տնտեսական

հարցերին նվիրված հոդվածներ ու կոնսուլտացիաներ (ամսական 3—4 անգամ) և այլ նյութեր՝ պրոպագանդիստներին և ագիտատորներին օգնելու համար:

ՀամԿ(բ)Պ կենտկոմը հանձնարարեց նաև վերաբաշխել թերթերի ցանցը ռեսպուբլիկայում, այն հաշվով, որ ռեսպուբլիկական թերթերի տիրաժի առնվազն երեք քառորդը ուղարկվի անմիջականորեն շրջանները՝ սկզբնական պարտիական կազմակերպություններին, խրճիթ-ընթերցարաններին, գյուղսովետներին և կոլխոզներին. բոլոր գյուղսովետներում և կոլխոզներում ստեղծել լրագրային ցուցափեղկեր:

Գտնելով, որ մասսաներում քաղաքական աշխատանք կատարելու գործում պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է բնակչությանը ճիշտ և ժամանակին ինֆորմացիա տալը սովետական, քաղաքական ու միջազգային իրադարձությունների մասին, ՀամԿ(բ)Պ կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թամթարական մարզկոմին պարտավորեցրեց սիստեմատիկ աշխատանք կատարել ագիտատորների մեջ, ապահովել շաբաթական առնվազն երկու անգամ նրանց հրահանգումը ընթացիկ քաղաքականության հարցերի մասին. առնվազն երկու



ամիսը մի անգամ հրավիրել ագիտատորների շրջանային կամ փնջային խորհրդակցություններ, իսկ խոշոր ձեռնարկություններում առնվազն ամսական մի անգամ համագործարանային խորհրդակցություններ՝ դնելով այդտեղ հրահանգչական քաղաքական զեկուցումներ, ինչպես նաև ՀամԿ(բ)Պ շրջկոմների քարտուղարների կամ ձեռնարկությունների պարտիական կոմիտեների քարտուղարների զեկուցումները՝ տնտեսական-քաղաքական հերթական խնդիրների մասին. ձեռնարկություններում և հիմնարկներում ամսական առնվազն մի անգամ գումարել բանվորների և ծառայողների ժողովներ, դնելով այդտեղ քաղաքային և շրջանային պարտիական-սովետական աշխատողների, ձեռնարկությունների ու հիմնարկների ղեկավարների զեկուցումները՝ ընթացիկ տնտեսա-քաղաքական և միջազգային իրադարձությունների մասին. վերահսկողություն կազմակերպել ձեռնարկություններում ու կոլխոզներում արվող զեկուցումների, պատասխանատվությունների գաղափարական-քաղաքական բովանդակության նկատմամբ, ինչպես նաև կազմակերպել զեկուցումների բովանդակության քննարկումը զեկուցող-

ների խորհրդակցություններում, իսկ ՀամԿ(բ)Պ մարզկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնին՝ օգնություն ապահովել շրջանային զեկուցողներին և ագիտկոլեկտիվների ղեկավարներին, ուղարկելով նրանց նյութեր, լավագույն դասախոսությունների սղագրություններ և առնվազն 1½ ամիսը մի անգամ շրջաններում կազմակերպել հրահանգչական զեկուցումներ՝ ՀամԿ(բ)Պ մարզկոմի դասախոսների ու զեկուցողների ուժերով:

Թաթարական ԱՍՍՌ-ում քաղաքական-լուսավորական աշխատանքը բարելավելու նպատակով, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ մարզկոմին առաջարկեց վերականգնել անգործության մատնված բոլոր խրճիթ-ընթերցարանների, կուլտուրայի տների, շրջանային գրադարանների աշխատանքը և արգելել խրճիթ-ընթերցարանների ու գրադարանների շենքերի օգտագործումը կողմնակի նպատակներով. ապահովել մառեկանդությամբ ռեսպուբլիկայի քաղ-լուսավորական բոլոր հիմնարկները. ծավալել գիտա-լուսավորական պրոպագանդա և ինտելիգենցիայի կադրերին լայնորեն ներգրավել բնակչության համար մասշտաբի



դասախոսություններ կարդալու գործում. կազմակերպել քաղլուսավորական աշխատողների վեցամսյա դասընթացներ. նորոգման ենթարկել ամբողջ չգործող կինոապարատուրան և ապահովել կինոֆիլմերի ցուցադրումը յուրաքանչյուր գյուղսովետում ամսական առնվազն մեկ անգամ. մինչև 1944 թվի վերջերը կազմակերպել տեղական ռադիոհաղորդում բոլոր շրջաններում, ապահովել ռադիոհանգույցների անխափան աշխատանքը և գյուղսովետների հեռախոսային բոլոր սարքերը հարմարեցնել ռադիոհաղորդման նպատակներին:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին պարտավորեցրեց կազմակերպել Թաթարիայի պատմության գիտական մշակումը, վերացնել նացիոնալիստական բնույթ կրող այն լուրջ թերությունները ու սխալները, որոնք թույլ են տվել առանձին պատմաբաններ ու գրականագետներ Թաթարիայի պատմությունը լուսաբանելու ասպարեզում (Ոսկե Հորդայի ավելի լավ գծեր վերագրելը, Իդեգեի մասին խանական-ֆեոդալական էպոսի մասսայականացումը), հատուկ ուշադրություն նվիրել համատեղ այն պայքարի պատմության հետազոտմանն ու լուսաբանմանը,

որ մղել են ռուս, թաթար և ՍՍՌՄ այլ ժողովուրդները ընդդեմ օտարերկրյա զավթիչների, ցարիզմի և կալվածատիրական-կապիտալիստական ճնշման, ինչպես նաև սովետական իշխանության ժամանակաշրջանում Թաթարիայի սոցիալիստական վերակառուցման պատմությունը և թաթարական ժողովրդի ականավոր գործիչների, գիտնականների ու ռևոլյուցիոներների և նրա զավակների՝ Հայրենական պատերազմի հերոսների՝ ժողովրդականացմանը:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին պարտավորեցրեց նաև լրջորեն բարելավել երիտասարդության մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքի ղեկավարումը, ապահովել կոմերիտական կազմակերպությունների կազմակերպական-քաղաքական ամրապնդումը, միջոցներ ձեռք առնել, որ կոմերիտական կազմակերպություններ ստեղծվեն ռեսպուբլիկայի բոլոր կոլխոզներում, ապահովել կոմերիտական կազմակերպությունների կյանքի սիստեմատիկ լուսաբանումը ռեսպուբլիկական թերթերում: ՀամԿ(բ)Պ մարզկոմները, քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են,—ասված է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման մեջ,—ամենօրյա օգնություն



ցույց տալ կոմերիտական կազմակերպություններին՝ երիտասարդության մեջ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք կազմակերպելու ասպարեզում, պրոպագանդիստներ հատկացնել խմբակները ղեկավարելու և զեկուցումներով, դասախոսություններով, զրույցներով հանդես գալու համար:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին առաջարկեց մարզային, քաղաքային և շրջանային պրոպագանդիստական ու լրագրային աշխատողներին օգտագործել ոչ-պրոպագանդիստական աշխատանքի համար, ինչպես նաև նրանց շրջաններին, գյուղսովետներին ու կոլխոզներին կցել, որպես տնտեսական կամպանիաների լիազորներ, և առաջարկեց ՀամԿ(բ)Պ մարզկոմին մինչև 1944 թվի նոյեմբերի 1-ը համալրել ՀամԿ(բ)Պ շրջկոմների պրոպագանդայի և ագիտացիայի բաժինների ու շրջանային թերթերի խմբագրությունների ապարատը: ՀամԿ(բ)Պ Կենտկոմը ՀամԿ(բ)Պ Թաթարական մարզկոմին պարտավորեցրեց մարզկոմի բյուրոյում լսել շրջկոմների առաջին քարտուղարների հաշվետվությունները՝ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի վիճակի մասին:

# ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՆ ԱՄՆ-ՈՒՄ

## (ՏԵՂԵԿԱՆՔ)

Ամերիկայի Միացյալ Նահանգները 48 ինքնավար նահանգների ֆեդերացիա է (միավորում):

Ամերիկայի Միացյալ Նահանգներում 4 տարին մի անգամ տեղի են ունենում պետության ղեկավարի՝ պրեզիդենտի և վիցե-պրեզիդենտի ընտրությունները: Այդ ընդհանուր ամերիկյան ընտրությունները կոչվում են ազգային: Դրանք տեղի են ունենում որոշ ամիս և օր, երբեք չեն հետաձգվում և տեղափոխվում: Պրեզիդենտի ընտրությունները տեղի են ունենում յուրաքանչյուր նահանջ տարվա նոյեմբեր ամսի առաջին երեքշաբթի օրը, իսկ կոնգրեսի (պառլամենտի) ընտրությունները յուրաքանչյուր զույգ տարվա նոյեմբեր ամսի առաջին երեքշաբթի օրը:

Այդ կամպանիայի ընթացքը ավելի լավ հասկանալու համար, պետք է ծանոթանալ ԱՄՆ-ի պետական կառուցվածքի և քաղա-



քական պարտիաների,—այդ երկրի կոնստիտուցիայի հետ, այն բանի հետ, թե ինչպես են տեղի ունենում պրեզիդենտի և կոնգրեսի՝ ԱՄՆ-ի օրենսդիր օրգանի ընտրությունները:

Կոնգրեսը կազմված է երկու պալատից՝ Ներկայացուցիչների պալատից և սենատից: Սենատը— պառլամենտի վերին պալատը՝ ընտրվում է վեց տարով: Յուրաքանչյուր նահանգից ընտրվում է երկու սենատոր: Այսպիսով, սենատն ունի 96 անդամ: Յուրաքանչյուր երկու տարին մի անգամ սենատի մեկ երրորդը նորոգվում է: Ընթացիկ տարում ընտրվելու է 32 սենատոր:

Ներկայացուցիչների պալատը (ստորին պալատը), 435 անդամով, ընտրվում է երկու տարով, համապատասխան առանձին նահանգների բնակչության թվի: 1944 թվին ընտրվելու է ներկայացուցիչների պալատի ամբողջ կազմը:

Այս տարի սենատորների և ներկայացուցիչների պալատի անդամների ընտրությունները տեղի են ունենալու պրեզիդենտի և վիցե-պրեզիդենտի ընտրությունների հետ միաժամանակ:

Պրեզիդենտը և վիցե-պրեզիդենտը ընտրվում են երկաստիճան, այսպես կոչված

անուղղակի ընտրությունների միջոցով: Ընտրողները անմիջականորեն չեն քվեարկում պրեզիդենտի պոստի թեկնածուի օգտին, այլ միայն ընտրում են ընտրիչներ, որոնք առաջադրվում են յուրաքանչյուր նահանգում՝ ընտրական կամպանիային մասնակցող քաղաքական պարտիաների կողմից: Ընտրիչների թիվը յուրաքանչյուր նահանգում հավասար է տվյալ նահանգից կոնգրեսի երկու պալատներին ուղարկվող ներկայացուցիչների թվին: Նյու-Յորքում, օրինակ, ընտրողները քվեարկելու են հօգուտ ռեսպուբլիկական կամ դեմոկրատական պարտիաների առաջադրած 47 ընտրիչների:

Կոնստիտուցիայի համաձայն սենատորները, ներկայացուցիչների պալատի անդամները և աստիճանավորները իրավունք չունեն ընտրիչ ընտրվելու:

Բոլոր 48 նահանգների ընտրողները «նոյեմբերի առաջին երկուշաբթուն հաջորդող առաջին երեքշաբթի օրը» միաժամանակ ընտրում են ընտրիչներին: Ընդամենը ընտրվում է 531 ընտրիչ:

Այս տարի ընտրիչների ընտրությունները տեղի են ունենալու նոյեմբերի 7-ին՝ «ընտրությունների օրը»:



Այն բանի հետևանքով, որ ըստ հաստատված տրադիցիայի, ընտրիչները քվեարկում են հօգուտ իրենց պարտիայի թեկնածուի, ընտրիչների ընտրությունը կանխորոշում է այն հարցը, թե ով է լինելու պրեզիդենտ:

Ընտրիչները «դեկտեմբերի երկրորդ չորեքշաբթի օրվան հաջորդող առաջին երկուշաբթի օրը» հավաքվում են իրենց նահանգների մայրաքաղաքներում և քվեներով իրենց ձայնը տալիս են առանձին՝ հօգուտ պրեզիդենտի և առանձին՝ հօգուտ վիցե-պրեզիդենտի: Այս քվեարկությունը ընթացիկ տարում տեղի կունենա դեկտեմբերի 18-ին:

Քվեարկության արդյունքները պարունակող կնքված թերթիկները հանձնվում են սենատի պրեզիդենտին, որը սենատի և ներկայացուցիչների պալատի ներկայությամբ բաց է անում դրանք, որից հետո կատարվում է հաշվառքը: Այս ընթացիկ ընտրական կամպանիայի ժամանակ այդ բանը կատարվելու է 1945 թվի հունվարի 6-ին:

Ձայների բացարձակ մեծամասնություն (բոլոր ընտրիչների կեսից անցնող մեծամասնություն) ստացած թեկնածուն հա-

մարվում է ընտրված ԱՄՆ-ի պրեզիդենտ։ Այդ նույն պայմաններով միաժամանակ ընտրվում է նաև վիցե-պրեզիդենտը։

Այն դեպքում, երբ պրեզիդենտության թեկնածուներից և ոչ մեկը պահանջվող մեծամասնությունը չի ստանում, պրեզիդենտի ընտրության իրավունքն անցնում է ներկայացուցիչների պալատին, որը պրեզիդենտ է ընտրում առաջադրված և առավել շատ ձայն ստացած թեկնածուների թվից։

Նոր պրեզիդենտը անցնում է իր պարտականությունների կատարմանը ընտրությունների հաջորդ տարվա հունվարի 20-ի կեսօրին։

1944 թվի կոնգրեսի ընտրությունները տեղի են ունենալու 79-րդ անգամ՝ ԱՄՆ կոչված ֆեդերատիվ ռեսպուբլիկայի հիմնադրման օրից։ Կոնգրեսի ներկայիս կազմը կոչվում է 78-րդ։

ԱՄՆ-ի ֆեդերալ կոնստիտուցիան նախատեսում է միայն մի քանի ընդհանուր դրույթներ։ Ենթադրվում է, որ ընտրություններին մասնակցելու ԱՄՆ-ի քաղաքացիների իրավունքը չի կարող մերժվել կամ սահմանափակվել ռասայի, մորթու գույնի և սեռի պատրվակով։ Ընտրությունների



ժամանակ քվեարկությունը պետք է լինի հավասար, գաղտնի և ուղղակի։ Ընտրելու իրավունք ունեն 21 տարեկան դարձած ԱՄՆ-ի քաղաքացիները։ Ներկայացուցիչների պալատում ընտրվելու իրավունք ունեն 25 տարեկան դարձած և առնվազն 7 տարի ամերիկյան քաղաքացի հանդիսացող անձինք, իսկ սենատում՝ 30 տարեկան դարձած և առնվազն 9 տարի ամերիկյան քաղաքացի հանդիսացող անձինք։

Ամերիկյան օրենքներով ընտրողների մասնակցությունը ընտրություններին՝ որոշվում է ինքնուրույն կերպով 48 նահանգներից յուրաքանչյուրի կողմից։ Այսպես, 8 նահանգում ընտրություններին մասնակցելու համար անհրաժեշտ է վճարել ընտրական հարկ։ 3 նահանգում պահանջվում է որոշ որակավորում։ 13 նահանգում ձայնի իրավունքից զրկվում են պետական նպաստ ստացող անձինք։ 37 նահանգում գոյություն ունի նստակյացության ցենզ. ընտրական իրավունքը տրվում է միայն այն անձանց, որոնք մեկ տեղում ապրել են ոչ պակաս քան մեկ տարի։ 20 նահանգում գոյություն ունեն քաղաքացիների կրթության հետ կապված սահմանափակումներ։ Միսիսիպի նահան-

գում ձայնի իրավունքից զրկվում են անուղղելի հարկատուները:

Ամբողջ երկրի համար ընդհանուր է այն, որ ընտրողները կարող են քվեարկել միայն իրենց հայրենի նահանգում: Այդ հանգամանքը այժմ շատ բանվորների, որոնք երկրի զանազան ծայրերից վերջերս ժամանել են պատերազմի ժամանակ ստեղծված ռազմաարդյունաբերական նորանոր կենտրոնները, խանգարում է մասնակցելու ընտրություններին: Եվ, վերջապես, որը շատ կարևոր է, հայրենի նահանգում քվեարկելու պահանջը ընտրություններին մասնակցելու հնարավորությունից զրկում է ամերիկյան զինվորներին, ծովայիններին և մյուս ընտրողներին, որոնք գտնվում են բնակության նախկին տեղից հեռու:

ԱՄՆ-ի պրեզիդենտը լայն իրավունքներ ունի: Նա հանդիսանում է պետության ղեկավարը և վարչապետը (առաջին մինիստրը), կառավարության ղեկավարը: Խաղաղ ժամանակ նա գլխավորում է բանակն ու նավատորմը: Պատերազմի ժամանակ հանդիսանում է երկրի բոլոր զինված ուժերի գլխավոր հրամանատարը: Նա նշանակում է մինիստրներ, մինիստրները պատասխանատու են միայն պրեզիդենտի առաջ: Ին-



քը պրեզիդենտը պատասխանատու է համարվում միայն ժողովրդի առաջ:

Պրեզիդենտը սենատի համաձայնությամբ նշանակում է գերագույն դատարանի անդամների, դիվանագիտական ներկայացուցիչների և Միացյալ նահանգների մյուս բարձր պաշտոնատար անձանց:

Նա լիազորված է պայմանագրեր կնքելու մյուս տերությունների հետ, պայմանով, որ պայմանագիրը հավանություն գտնի սենատում: Պրեզիդենտը կարող է վետո (արգելք) դնել ներկայացուցիչների պալատի և սենատի ընդունած որևէ որոշման վրա: Այդ դեպքում օրինագիծը կարող է օրենք դառնալ այն բանից հետո, երբ այն նորից ընդունվի երկու պալատների կողմից, յուրաքանչյուր պալատի ձայների երկու երրորդի մեծամասնությամբ:

ԱՄՆ-ում օրենսդրական իշխանությունը պատկանում է կոնգրեսին: Եվ թեև կոնգրեսը չի կարող պրեզիդենտին ստիպել հրաժարական տալ, սակայն առանց կոնգրեսի հավանության, ԱՄՆ-ի կառավարությունը չի կարող լուծել պետական շատ կարևոր հարցերը, մանավանդ արտաքին քաղաքականության հիմնական հարցերը:

Այսպես, օրինակ, ԱՄՆ-ի կառավարությունը չի կարող առանց կոնգրեսի սանկցիայի (հավանության) փոխատվություն տրամադրել օտարերկրյա պետություններին, կնքել միջազգային պայմանագրեր, որոնք ենթակա են սենատի ռատիֆիկացիային (վավերացմանը) և ուժի մեջ են մտնում, եթե նրանց հավանություն են տալիս ներկա եղող սենատորների երկու երրորդը: Այսպիսով, 33 սենատոր կարող են մերժել կառավարության կնքած ամեն մի միջազգային համաձայնագիր:

Պրեզիդենտի և վիցե-պրեզիդենտի պոստի թեկնածուները առաջադրվում են քաղաքական պարտիաների համաամերիկյան կոնվենտներում (համագումարներում): Այդ համագումարները ընդունում են նաև գործողությունների այն պլատֆորմ-ծրագրերը, որոնց խոստանում են հետևել պրեզիդենտության տվյալ պարտիաների կողմից առաջադրված թեկնածուները:

Այս տարվա ընտրություններին մրցակցելու են երկու հիմնական պարտիա՝ ռեսպուբլիկական և դեմոկրատական: Այդ պարտիաներից յուրաքանչյուրը ներկայացնում է մի կազմակերպություն, որը համախմբում է երբեմն հակադիր հայացքներ



ու շահեր ունեցող զանազան խմբեր, բլոկներ և շրջաններ: Այդ պարտիաներից յուրաքանչյուրի մեջ կան իրենց պահպանողականները, իրենց լիբերալները, իրենց պրոգրեսիստները: Վերջին 10—12 տարվա ընթացքում դեմոկրատների մոտ ղեկավարությունը գտնվում է ավելի պրոգրեսիվների ձեռքին, իսկ ռեսպուբլիկականների մոտ՝ ավելի ռեակցիոն ղեկավարների ձեռքում:

Հունիսի վերջին Չիկագոյում տեղի ունեցավ ռեսպուբլիկական պարտիայի համագումարը: Այդ պարտիայի համագումարներում սովորաբար բացահայտ կատաղի պայքար էր տեղի ունենում պրեզիդենտի և վիցե-պրեզիդենտի պոստի զանազան թեկնածուների միջև: Համառ պայքարի մասին է վկայում, օրինակ, այսպիսի փաստը. 1940 թվի ընտրությունների նախօրյակին տեղի ունեցած համագումարում մրցակցում էին 13 թեկնածու: 5 քվեարկություն արդյունք չտվին, այն պատճառով, որ թեկնածուներից և ոչ մեկը ձայների մեծամասնություն չստացավ: Եվ միայն 6-րդ քվեարկությունից հետո պրեզիդենտի պոստի թեկնածու առաջադրվեց Ուիլկին:

Այդ պարտիայի ղեկավարները, որը ե-

րեք անգամ իրար վրա 1932, 1936 և 1940 թվերին պարտություն են կրել պրեզիդենտական ընտրություններում, հանդուգն միջոցներ ձեռք առան, որպեսզի այս անգամ միասնություն պահպանեին համագումարում:

Հունիս ամսին տեղի ունեցած համագումարում պրեզիդենտի պոստի առավել ակտիվ թեկնածու Բրիկերը, որը հանդուգն նախապատերազմական կամպանիա էր մղում, ետ վերցրեց իր թեկնածությունը: Իսկ Մինեսոտա նահանգի դելեգատները փոխեցին պրեզիդենտի պոստի համար Ստասսենին առաջ քաշելու իրենց որոշումը:

Այսպիսով, ռեսպուբլիկականները ունեցան մեկ թեկնածու՝ Նյու-Յորք նահանգի նահանգապետ Թոմաս Դյուին, որն ստացավ 1056 ձայն, մեկ՝ դեմով, վիցե-պրեզիդենտի պոստի թեկնածու առաջ քաշվեց Օհայո նահանգի նահանգապետ Բրիկերը:

Դյուին 42 տարեկան է: Քաղաքական ասպարեզում նա երևան է եկել 1935 թվին: Դյուին, որպես իրավաբան մասնակցել է Նյու-Յորքում տեղի ունեցած կոռուպցիայի (հասարակական-քաղաքական գործիչների և պաշտոնատար անձանց կաշառվածություն,



կաշառակերություն) հետաքննությանը: Այդ դատավարության հետևանքով հռչակ ձեռք բերած Դյուին 1937 թվին ընտրվեց օկրուգային դատախազ, իսկ 5 տարուց հետո՝ Նյու-Յորքի նահանգապետ: Դյուին ակտիվորեն պաշտպանում է իզոլյացիոնիստական տարրերին, որոնք հանդես են գալիս Ռուզվելտի և նրա առաջադեմ քաղաքական ծրագրի դեմ:

Հուլիսի 19—21-ին Չիկագոյում տեղի ունեցավ դեմոկրատական պարտիայի կոնվենտը (համագումարը): Համագումարը ճնշող մեծամասնությամբ, 1086 ձայնով ընդդեմ 90-ի, չորրորդ անգամ պրեզիդենտի պոստի թեկնածու առաջ քաշեց Ֆրանկլին Ռուզվելտին: Ռուզվելտը 62 տարեկան է: Քաղաքական ակտիվ գործունեությամբ նա զբաղվում է 25 տարի՝ համալսարանից հետո: 1910 թվին նա դեմոկրատական պարտիայի կողմից ընտրվեց Նյու-Յորք նահանգի օրենսդրական ժողովի անդամ: 1913—1920 թ. թ. նա ծովային մինիստրի օգնականն էր Վիլսոնի կառավարության մեջ: 1929—1932 թ.թ. մինչև պրեզիդենտ ընտրվելը նա Նյու-Յորք նահանգի նահանգապետն էր:

Ռուզվելտը մեծ ժողովրդականություն է վայելում ամերիկյան ժողովրդի մեջ: Բա-

վական է ասել, որ դեմոկրատական պարտիան և ԱՄՆ-ի ընտրողների մեծ մասը, ընդունելով Ռուզվելտի մատուցած ծառայությունները, 1940 թվին, նրա օգտին հրաժարվեցին հաստատված տրադիցիայից, որի համաձայն միևնույն անձը պրեզիդենտ կարող է ընտրվել ոչ ավելի քան երկու անգամ:

Դեմոկրատների համագումարում որոշ տարաձայնություններ առաջացան վիցե-պրեզիդենտի պոստի թեկնածության հարցի շուրջը: ԱՄՆ-ի ներկայիս վիցե-պրեզիդենտ Ուելլեսի փոխարեն դեմոկրատական պարտիայի համագումարը առաջադրեց սենատոր Տրումենին:

Համագումարը անցկացվեց հետևյալ լոզունգով.

«Ռուզվելտ և հաղթանակ»,— «Ռուզվելտ և երկարատև խաղաղություն»,—հիտլերյան Գերմանիայի դեմ Թեհրանի կոնֆերանսի որոշումների ոգով հետևողական և վճռական պայքար մղելու լոզունգներով:

Համագումարների կողմից ընտրական պլատֆորմները հաստատելով և պրեզիդենտի ու վիցե-պրեզիդենտի պոստի թեկնածուներ առաջ քաշելով, ավարտվեց ընտրական կամպանիայի առաջին



էտապը: Ընտրական կամպանիան թևակոխեց իր վերջին փուլը: Այժմ պարտիաները բոլոր ուժերը նվիրվում են իրենց թեկնածուների ընտրության ապահովմանը, ընտրողների ձայնի համար մղվող պայքարին:

ԱՄՆ-ի ներկայիս ընտրական կամպանիայի առանձնահատկությունն այն է, որ դրանց մասնակցում են ամերիկյան պրոֆմիությունները, որոնք իրենց շարքերում ունեն 14 միլիոն բանվոր: Եթե ամերիկյան պրոֆմիությունները առաջ սովորաբար աշխատում էին ձեռնպահ մնալ քաղաքական ակտիվ գործունեությունից, ապա այժմ, ինչպես այդ մասին հաղորդում է ամերիկյան մամուլը, զգալի թվով ամերիկյան պրոֆմիություններ մասնակցում են ընտրություններին և պաշտպանում Ռուզվելտին: Այսպես, օրինակ, արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը, որն ունի ավելի քան 5 միլիոն անդամ, եռանդուն կերպով կամպանիա է մղում Ռուզվելտի օգտին: 13 ամիս առաջ արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը կազմակերպեց «քաղաքական գործունեության կոմիտե» (ՔԳԿ), որ նպատակն է, կամպանիա մղել Ռուզվելտի վերընտրության օգտին:

ԱՄՆ-ի նախընտրական կամպանիայի բնո-

բուշ առանձնահատկությունն այն է, որ այդ կամպանիան ծավալվում է պատերազմի վճռական էտապում, երբ աճում է միավորված ազգերի մարտական համագործակցությունը, և երբ ռեակցիոն տարրերը փորձում են դանդաղեցնել ֆաշիստական ագրեսորների ջախջախումը: Դա իր դրոշմն է դնում նախընտրական կամպանիայի ընթացքի վրա:



# ՀԱՄԿ(Բ)Պ ԾՐԱԳՐԻՆ ՈՒ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆԸ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼՈՒ ԹԵՄԱՏԻԿԱ

## ՀԱՄԿ(Բ) ՊԱՐՏԻԱՅԻ ԱՆԴԱՄՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ԵՎ ՆՈՐ ԸՆԴՈՒՆՎԱԾ ԱՆԴԱՄՆԵՐԻ ՀԵՏ ՊԱՐԱՊԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Թ Ե Մ Ա 1. Լենինի-Ստալինի պարտիան նոր տիպի պարտիա է.

1. *Լենինի-Ստալինի ուսմունքը կոմունիստական պարտիայի՝ որպես նոր տիպի պարտիայի՝ առանձնահատկությունների մասին:*

ա) *Բոլշևիկյան պարտիայի տարբերությունը 2-րդ Ինտերնացիոնալի պարտիաներից.*

բ) *Բոլշևիկյան պարտիան, որպես բանվոր դասակարգի առաջավոր ջոկատ.*

գ) *Պարտիան, որպես բանվոր դասակարգի կազմակերպված ջոկատ.*

դ) *Պարտիան, որպես պրոլետարիատի*

դասակարգային կազմակերպության բարձրագույն ձև.

ե) Պարտիան, որպես բանվոր դասակարգի առաջավոր ջոկատի և բանվոր դասակարգի միլիոնավոր մասսաների կապի մարմնացում.

զ) Պարտիան, որպես պրոլետարիատի դիկտատուրայի գործիք.

է) Պարտիան, որպես կամքի միասնություն՝ անհամատեղելի է ֆրակցիաների գոյության հետ.

ը) Պարտիան ամրապնդվում է նրանով, որ իրեն մաքրում է օպորտունիստական տարրերից:

2. Ծրագրի ու կանոնադրության ընդունումը և միասնական պարտիայի ստեղծումը ՌՍԴԲՊ 2-րդ համագումարում:

3. Բոլշևիկների ձևավորումը որպես ինքնուրույն մարքսիստական պարտիա 1912 թ. Պրագայի կոնֆերանսում:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճառ կոմունիստական պարտիայի դերի մասին,—արտասանված Կոմինտերնի 2-րդ կոնգրեսում, հուլիսի 23-ին: «Կոմունիստական



Ինտերնացիոնալի մասին» գրքում: էջ 142—147:
Հայկուսհրատ, Երևան, 1936 թ.:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Ձախության մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», էջ 28—36:
Հայկուսհրատ, Երևան, 1935 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ. Լենինիզմի հիմունքների մասին. Հատված 8-րդ. «Պարտիան», «Լենինիզմի հարցերը» գրքում. 11-րդ հրատարակություն. էջ 85—99:
Քաղ. գրակ. հրատ. Երևան, 1940 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հարցերի շուրջը. Հատված 5— «Պարտիան և բանվոր դասակարգը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում. «Լենինիզմի հարցերը» գրքում, էջ 150—173:
Քաղ. գրակ. հրատ. Երևան, 1940 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 18-րդ համագումարում, ՀԱՄԿ(բ)Պ ԿԿ աշխատանքի մասին: Հատված 3-րդ, «ՀամԿ(բ)Պ հետագա ամրապնդումը». պարագրաֆներ 1, 2, 3. Երևան, Պետհրատ, 1939 թ.: էջ 45—58:

«Համկ(բ)Պ Պատմության համառոտ դասընթաց» ներածություն, էջ 3—4, գլուխ 2-րդ, պարագրաֆներ 3, 4. էջ 53—71, գլուխ IV, պարագրաֆ 5, էջ 187—193։

**Թ Ե Մ Ա 2.** Պարտիայի ծրագիրը, նրա հիմնական գաղափարները.

1. Լենինի պայքարը մարքսիստական ծրագիր ստեղծելու համար։

2. Պարտիայի ծրագրի ընդունումը ՌՍԴԲՊ 2-րդ համագումարում։

3. ՌԿ(բ)Պ 8-րդ համագումարում ընդունված պարտիայի ծրագրի բովանդակությունն ու նշանակությունը։

4. Համկ(բ)Պ 18-րդ համագումարի որոշումը պարտիայի ծրագիրը փոփոխելու մասին։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալ-դեմոկրատական պարտիայի ծրագրի նախագիծն ու բացատրությունը, Երկերի ժողովածու. 2-րդ հատոր, էջ 103—141։ Հայպետհրատ, Երևան, 1943 թ.։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճառեր, արտասանված պարտիայի 2-րդ համագումարում



պարտիայի ծրագրի մասին. Երկերի ժողովածու, 6-րդ հատոր, էջ 24—26, 28—34։ Կուսհրատ, Երևան, 1936 թ.։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նյութեր պարտիայի ծրագիրը վերանայելու վերաբերյալ. Ընտիր երկերի վեցհատորյակի 3-րդ հատոր, էջ 393—413։
Կուսհրատ, Երևան, 1933 թ.։

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Զեկուցում և եզրափակիչ խոսք պարտիական ծրագրի մասին. ՌԿ(բ)Պ 8-րդ համագումարում 1919 թվի մարտի 19-ին։ Ընտիր երկերի վեցհատորյակի 4-րդ հատոր, էջ 741—773։
Կուսհրատ, Երևան, 1935 թ.։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Սոցիալ-դեմոկրատիան ինչպես է հասկանում ազգային հարցը։ Առանձին բրոշյուր.
Երևան, Քաղ. գրակ. հրատ։ 1940 թ.։

Андреев А. А.—Выступление на XVIII съезде ВКП(б) по четвертому вопросу порядка дня: Выборы комиссии по изменению программы ВКП(б). XVIII съезд Всесоюзной Коммунистической партии (большевиков). Стенографи-

ческий отчет, стр. 634. Госполитиздат, 1939 г.

*ՀամԿ(բ)Պ ծրագիր:*

*Քաղ. գրակ. հրատ. Երևան*, 1938 *թ.*

*«ՀամԿ(բ)Պ Պատմության համառոտ դասընթաց». գլուխ* 2-*րդ*, *պարագրաֆ* 3, *էջ* 53—60, *գլուխ* 8-*րդ*, *պարագրաֆ* 2, *էջ* 310—318, *գլուխ* 9-*րդ*, *պարագրաֆ* 2, *էջ* 339—348:

**ԹԵՄԱ 3.** ՀամԿ(բ)Պ կանոնադրությունը պարտիական կյանքի և պարտիական շինարարության անխախտելի հիմքն է.

1. *Պարտիայի կանոնադրության ընդունումը ՌՍԴԲՊ 2-րդ համագումարում: Լենինի պայքարն օպորտունիստների դեմ՝ կանոնադրության առաջին պարագրաֆի՝ պարտիայի անդամության հարցի շուրջը:*
2. *Լենինը և Ստալինը պարտիայի կանոնադրության նշանակության մասին:*
3. *Պարտիայի 18-րդ համագումարի որոշումը կազմակերպական հարցերի մասին:*
4. *Պարտիայի 18-րդ համագումարում ընդունված ՀամԿ(բ)Պ կանոնադրության բովանդակությունը:*



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսաստանի ՍԴԲՊ-ի կանոնադրության նախագիծը: Երկերի ժողովածու, հատոր* 6-*րդ*, *էջ* 13—15: *Երևան, Կուսհրատ*, 1936 *թ.:*

*Ճառ՝ պարտիական կանոնադրությունը քննելիս, օգոստոսի* 15 (2)-*ին: Նույն գրքում, էջ* 35—38:

*Ճառ՝ «Իսկրա»-ի խմբագրությունն ընտրելիս, օգոստոսի* 20 (7)-*ին, Նույն գրքում, էջ* 39—42:

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մի քայլ առաջ, երկու քայլ հետ: Երկերի ժողովածու, հատոր* 6-*րդ*, *էջ* 251—257: *Կուսհրատ, Երևան*, 1936 *թ.:*

Ленин В. И. — Записка В. М. Молотову: 15 сентября 1921 г. Журнал «Пролетарская революция», № 1, 1939 г.

Сталин И. В. — Класс пролетариев и партия пролетариев. Госполитиздат, 1940 г.

Сталин И. В. — Об очередных задачах партстроительства. Сборник Ленин и Сталин. т. II. стр. 602—622. Партиздат ЦК ВКП(б), 1936 г.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 18-րդ համագումարում, ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի աշխատանքի մասին: «Լենինիզմի հարցերը» գրքում, էջ 686—742:

Քաղ. գրակ. հրատ., Երևան, 1940 թ.:

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց», գլուխ 2-րդ, պարագրաֆներ, 3, 4, էջ 41—60:

ԺԴԱՆՈՎ Ա. Ա.—Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ: Զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում, 1939 թ. մարտի 18-ին: Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ.: Երևան, 1939 թ.:

Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ: ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևը: «ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևերը» գրքում, էջ 53—82, Քաղհրատ, Երևան, 1939 թ.:

ՀամԿ(բ)Պ կանոնադրությունը: Նույն գրքում, էջ 83—109:

ԹԵՄԱ 4.—Պարտիայի անդամների պարտականություններն ու իրավունքները:



1. Պարտիայի անդամության մասին.

2. Պարտիայի անդամի պարտականությունները՝

ա) Բոլշևիզմին տիրապետելը.

բ) Պարտիական կարգապահության խիստ պահպանումը.

գ) Աշխատանքային և պետական կարգապահության պահպանումը.

դ) Մասսաների հետ կապի ամրապնդումը:

3. Պարտիայի անդամի իրավունքները:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— «Ձախության մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ». էջ 8—12, Հայկուսհրատ, Երևան, 1935 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 18-րդ համագումարում. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին, 3-րդ գլուխ—ՀամԿ(բ)Պ հետագա ամրապնդումը. պարագրաֆներ 1, 2, 3. «Լենինիզմի հարցերը» գրքում, էջ 720—729:

Քաղ. գրակ. հրատ. Երևան, 1940 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.—Պարտիական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ երկերեսանիների լիկ-

վերացնելու ենթարկելու միջոցառումների մասին: Զեկուցում և եզրափակման խոսք ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումում, 1937 թ. մարտի 3—5-ին: Հայկուսհրատ, Երևան, 1937 թ.:

ԺԴԱՆՈՎ Ա. Ա.—Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ: Զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում, 1939 թ. մարտի 18-ին: Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., Երևան, 1939 թ.:

Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ,—ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևը. «ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևերը» գրքում, էջ 53—82: Քաղ. գրակ. հրատ., Երևան, 1939 թ.:

Պարտիայից կոմունիստներին վտարելիս, պարտկազմակերպությունների կատարած սխալների, ՀամԿ(բ)Պ-ից վտարվածների բողոքների նկատմամբ ձևական-բյուրոկրատական վերաբերմունքի և այդ թերությունները վերացնելու միջոցների մասին: ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1938 թ. հունվարյան պլենումի որոշումը.



Հայկուսհրատ, Երևան, 1938 թ.:

ՀամԿ(բ)Պ կանոնադրություն. «Պարտիայի անդամը և նրա պարտականությունները» գլուխը: Երևան, Պետհրատ, քաղ. գրակ. հրատ., 1939 թ.:

ԹԵՄԱ 5.— Պարտիայի կառուցվածքը և ներպարտիական դեմոկրատիան.

1. Դեմոկրատական կենտրոնացումը— բոլշևիկյան պարտիայի կազմակերպության ղեկավար սկզբունքը:

2. Դեմոկրատիան և ինքնաքննադատությունը բոլշևիկյան պարտիայի մեջ:

3. Ներպարտիական դեմոկրատիզմի ծավալումը:

4. Պարտիայի կառուցումը տերիտորիալ արտադրական սկզբունքով:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին— գլուխ 8-րդ «Պարտիան». «Լենինիզմի հարցերը» գրքում, էջ 85—101: Քաղ. գրակ., Պետհրատ, Երևան, 1940 թ.:

ԺԴԱՆՈՎ Ա. Ա.—Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ: Զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ համագու-

մարում: Պետ. քաղ. գրակ. հրատ., Երևան, 1939 թ.:

ԺԴԱՆՈՎ Ա. Ա.—Պարտիական կազմակերպությունների նախապատրաստումը ՍՍՌՄ Գերագույն Սովետի՝ նոր ընտրական սիստեմով կատարելիք ընտրություններին և պարտիական-քաղաքական աշխատանքի համապատասխան վերակառուցումը: Զեկուցում ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումում 1937 թ. փետրվարի 26-ին: Քաղ. գրակ., Պետհրատ, Երևան, 1939 թ.:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի բանաձևը ընկ. Ժդանովի վերոհիշյալ զեկուցման առթիվ, ընդունված 1937 թ. փետրվարի 27-ին: Նույն գրքում, էջ 43—48:

ՀամԿ(բ)Պ կանոնադրություն 3—7, 12, հատվածները:

Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ. ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևը. «ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևերը» գրքում. էջ 53—82. Քաղ. գրակ. հրատ., Երևան, 1939 թ.:

«ՀամԿ(բ)Պ համառոտ դասընթաց».



գլուխ 2, պարագրաֆ 4, էջ 60—71. գլուխ 9-րդ, պարագրաֆներ 2, 4: էջեր՝ 339—348, 356—364:

## ԹԵՄԱ 6.— Սկզբնական պարտիական կազմակերպությունները, նրանց խնդիրներն ու գործունեությունը:

1. Պարտիական սկզբնական կազմակերպությունները որպես պարտիայի հիմք:
2. ՀամԿ(բ)Պ կանոնադրությունը պարտիական սկզբնական կազմակերպությունների մասին:
3. Պարտիական սկզբնական կազմակերպությունների հիմնական խնդիրները Հայրենական պատերազմի պայմաններում:

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 18-րդ համագումարում ՀամԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին. 3-րդ գլուխ. «Լենինիզմի հարցերը» գրքում, էջ 720—742: Քաղ. գրակ. հրատ., Երևան, 1940 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին: Երևան, Հայպետհրատ, 1943 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հոկտեմբերյան Սոցիա-

լիստական Մեծ Ռևոլյուցիայի 20-րդ տարեդարձը. առանձին բրոշյուրով: Հայպետհրատ, Երևան, 1943 թ.:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հրաման Գերագույն Գլխավոր Հրամանատարի, 1944 թ. փետրվարի 23-ին: Առանձին բրոշյուր: Հայպետհրատ, Երևան, 1944 թ.:

ԺԴԱՆՈՎ Ա. Ա.—Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ: Զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում, 1939 թ. մարտի 18-ին: Երևան, Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939 թ.: Փոփոխություններ ՀամԿ(բ)Պ կանոնադրության մեջ. ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևը:
«ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևերը» գրքում, էջ 57—71: Պետ. քաղ. հրատ. Երևան, 1939 թ.: ՀամԿ((բ)Պ կանոնադրության 8-րդ հատվածը:

---



> «Էկոնոմիստների» դեմ մղված համառուսաստանյան պայքարում հաղթում է լենինյան «Искра»-յի ռևոլյուցիոն գիծը, հաղթահարվում են գաղափարական տարընթացությունն ու «տնայնագործությունը»:
>
> «ՀամԿ(բ)Պ Պատմության Համառոտ դասընթաց»:

# «ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑԸ» ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ*)

## ԳԼՈՒԽ II

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱԶՄՎԵԼԸ: ՊԱՐՏԻԱՅԻ ՆԵՐՍՈՒՄ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ԵՎ ՄԵՆՇԵՎԻԿՆԵՐԻ ՖՐԱԿՑԻԱՆԵՐԻ ԵՐԵՎԱՆ ԳԱԼԸ

(1901—1904 թվականները)

1. Ռևոլյուցիոն շարժման վերելքը Ռուսաստանում 1901—1904 թվականներին.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Չինական պատերազմը,

*) Սկիզբը տես «Ագիտ. բլոկնոտի» № 13—14-ում:

1900 թ.: Լենին և Ստալին.— Ընտիր երկեր մի հատորի մեջ, I պրակ, էջ՝ 93—98:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ծննդաժամի ցավերը: 1901 թ.: Լենին և Ստալին.— Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 157—361: Կուսհրատ. 1937, 1177 էջ:

Ленин В. И.—Внутреннее обозрение. 1901 г. Соч. т. IV, стр. 291—331.

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ցույցերի սկիզբը: 1901 թ.: Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին.— «Երիտասարդության մասին» ժողովածուի մեջ. էջ՝ 73—77: Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939. 390 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մայիսյան օրերը Խարկովում բրոշյուրի առաջաբանը: 1900 թ.: «Մայիսի 1-ը» բրոշյուրի մեջ: Քաղհրատ. Երևան, 1941 թ., էջ՝ 7—15:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նոր ջարդ: 1901 թ.: «Մայիսի 1-ը» բրոշյուրի մեջ: Քաղհրատ. Երևան, 1941 թ., էջ՝ 15—22:

Рабочее движение на Кавказе в 1899—



1901 г.г. [Статья, помещенная в газете «Брдзола» («Борьба») № 2—3, ноябрь—декабрь 1901 г.]. В книге: Второй съезд РСДРП, стр. 178—187. Госполитиздат, 1938. 304 стр.

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ձեմստվոյի հալածիչները և լիբերալիզմի հաննիբալները, 1901 թ.: Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատոր I, էջ՝ 576—594: [Այստեղ զետեղված են միայն 5-րդ և 6-րդ գլուխները: Ամբողջությամբ տես՝ Երկեր հատ. IV, էջ՝ 119—157 (ռուս. հրատ.)]:

Ленин В. И.—Политическая борьба и политиканство. 1902 г. Соч. т. V, стр. 193—199.

Ленин В. И.—Новые события и старые вопросы. 1902 г. Соч. т. V, стр. 206—210.

Ленин В. И. — Самодержавие колеблется... 1903 г. Соч. т. V, стр. 250—254.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Բանվորական պարտիան և գյուղացիությունը: 1901 թ.: Լենին և Ստալին.— Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ՝ 98—107: Կուսհրատ. 1937, 1177 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գյուղական չքավորությանը: Բացատրություն գյուղացիության համար, թե ինչ են ուզում սոցիալ-դեմոկրատները: 1903 թ., Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. I, էջ 612—680:

Сталин И. В.—Прокламация Батумской социал-демократической группы. В книге: Второй съезд РСДРП. стр. 164—167. Госполитиздат, 1938 г. 304 стр.

2. Մարքսիստական պարտիայի կառուցման լենինյան պլանը: «Էկոնոմիստների» օպորտունիզմը: «Искра»-յի պայքարը հանուն լենինյան պլանի: Լենինի «Ի՞նչ անել» գիրքը: Մարքսիստական պարտիայի իդեոլոգիական հիմքերը:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Մեր շարժման կենտրոնական խնդիրները: 1900 թ.: Լենին և Ստալին — Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 87—92:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչից սկսել: 1901 թ.: Լենին և Ստալին — Ընտիր երկեր մի հատորի մեջ, էջ 107—115:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ի՞նչ անել (Մեր շարժման հրատապ հարցերը): 1902 թ., Պետհրատ. Քաղ. գրակ. հրատ. 1939, 222 էջ:



Ленин В. И. Беседа с защитниками экономизма. 1901 г. Соч. т. IV, стр. 339—344.

Ленин В. И. Материалы к выработке программы РСДРП. 1902 г. Соч. т. V, стр. 1—51.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը: 1902 թ.: Ընտիր երկեր վեց հատորի մեջ, հատ. I, էջ 680—690, (Այստեղ զետեղված է միայն VII գլուխը, ամբողջությունը տես՝ Երկեր հատ. V, էջ 83—122 ռուս. հրատ.):

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչո՞ւ սոցիալ-դեմոկրատիան պետք է վճռական և անողոք պատերազմ հայտարարի սոցիալիստ-ռևոլյուցիոներներին: 1902 թ.: Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. I, էջ 565—568:

Ленин В. И. Основной тезис против эсеров. 1902 г. Пролетарская революция. 1936. № 7. стр. 164—166.

Ленин В. И. Анархизм и социализм. [Тезисы]. 1901 г. Пролетарская революция. 1936. № 7. стр. 163.

Ленин В. И. Революционный авантюризм. 1902 г. Соч. т. V, стр. 145—161.

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Ազգային հարցը մեր ծրագրում։ 1903 թ., Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. I, էջ 690—698։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Սոցիալ-դեմոկրատիան ինչպես է հասկանում ազգային հարցը։ 1904 թ. «Պրոլետարիատիս Բրձոլա» («Պրոլետարիատի պայքարը») թերթ. թարգմ. վրացերենից, հրատ. «Բոլշևիկ» № 23—24, 1939. «Կուսաշխատող». փետրվար 1940 թ., էջ 11—25։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Անցողիկ պարտիական տարաձայնությունների մասին։ 1905 թ.։ Հավելվածներ Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում. էջ 65—67։ Հայկուսհրատ. 1936 թ., 217 էջ։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Պատասխան սոցիալ-դեմոկրատին (զետեղված «Պրոլետարիատիս բրձոլա» թերթում. № 11, 1905, օգոստոսի 15 (28)։ Հատված Լ. Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի շուրջը» գրքում. էջ 67—69, Հայկուսհրատ, 1936, 217 էջ։



ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին, III— Թեորիան։ «Լենինիզմի հարցերը», էջ 24—40։

Проект программы Российской Социал-Демократической Рабочей Партии, выработанный редакцией «Искры» и «Зари», 1902 г. Ленин В. И. Соч. т. V, Приложения, стр. 380—384.

3. Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի II համագումարը։ Ծրագրի և կանոնադրության ընդունումը և միասնական պարտիայի ստեղծումը։ Տարաձայնությունները համագումարում և պարտիայի մեջ երկու հոսանքների՝ բոլշևիկյան ու մենշևիկյան հոսանքների երևան գալը։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ի՞նչ անել։ (Մեր շարժման ցավոտ հարցերը)։ 1902 թ.։ Եզրափակում, էջ 239—243, Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ. Երևան, 1938։

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Նամակ ընկերոջ՝ մեր կազմակերպչական խնդիրների մասին. 1902 թ.։ Լենին Վ. Ի.— Հոդվածներ և ճառեր պարտիական շինարարության խնդիրների շուրջը. էջ 118—143. Մոսկվա, ՀՍԱՌ Պետհրատ. 1930, 271 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճառ պարտիական ծրագրի վերաբերյալ հարցի մասին օգոստոսի 4 (հուլիսի 22-ին) [1903 թ. ՌՍԴԲՊ II համագումարում] Երկեր, հատ. VI: Երևան, Կուսհրատ. 1936, էջ 24—26:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսաստանի ՍԴԲՊ կանոնադրության նախագիծը: (Վարիանտ), 1904 թ.: Երկեր հատ. VI: էջ 13—15:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճառ պարտիայի կանոնադրությունը քննելիս, օգոստոսի 15 (2)-ին (1903 թ. ՌՍԴԲՊ II համագումարում): Երկեր հատ. VI, էջ 35—38:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ճառ «Искра»-ի խմբագրության ընտրելիս, օգոստոսի 20 (7)-ին (1903 թ. ՌՍԴԲՊ II համագումարում): Երկեր, հատ. VI, էջ 36—42:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պատմություն ՌՍԴԲՊ II համագումարի մասին: 1903 թ., Երկեր, հատ. VI, էջ 53—74:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երկու նամակ Գ. Մ. Կրժիժանովսկուն, Երկեր. հատ. VI, էջ 140—142:



ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Պրոլետարների դասակարգը և պրոլետարների պարտիան: Պարտիական կանոնադրության առաջին կետի առթիվ: 1905 թ., «Պրոլետարիատիս բրձոլա» («Պրոլետարիատի պայքարը») թերթ.: Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ. 1940, 14 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Լենինը որպես ՌԿՊ կազմակերպիչ և առաջնորդ: Հոդված Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ. Ի. Ստալինի «Լենինի մասին» գրքում. էջ 3—11: Պետհրատի Քաղ. գրակ. հրատ. 1939. 48 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.—Բոլշևիզմի պատմության մի քանի հարցերի մասին: (Նամակ «Пролетарская революция» ժուռնալի խմբագրությանը): «Լենինիզմի հարցերը». էջ 594—604:

Программа Российской социал-демократической рабочей партии, принятая II съездом — 1903 г. Ленин В. И. Соч. т. V. Приложения, стр. 384—388.

4. Մենշևիկյան լիդերների պառակտիչ փորձությունները և պարտիայի ներսում պայքարը որվեր II համագումարից հետո:

Մենշևիկների օպորտունիզմը: Լենինի «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» գիրքը: Մարքսիստական պարտիայի կազմակերպական խնդիրները:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ինչո՞ւ ես դուրս եկա «Искра»-յի խմբագրությունից: Նամակ «Искра»-յի խմբագրությանը: 1903 Թ.: Երկեր. հատ. VI, էջ 164—174:

Ленин В. И. — Совет Р.С.Д.Р.П. 28(15)—30(17). Января 1904 г. Соч. т. XXX, стр. 41—68.

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Մի քայլ առաջ, երկու քայլ հետ: Ճգնաժամ մեր պարտիայի մեջ: 1904:
Երկեր. հատ. VI. էջ 203—467:

Ленин В. И.—Шаг вперед, два шага назад. (Ответ Н. Ленина Розе Люксембург). 1904 г. Соч. т. XXX, стр. 88—97.

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Պարտիային: 1904 Թ.: Երկեր. հատ. VI, էջ 941—500:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նամակ ընկերներին: (Պարտիական մեծամասնության օրգանի լույս տեսնելու առթիվ): 1904 Թ.:
Երկեր. հատ. VI. էջ 518—524:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Հայտարարություն և փաստաթղթեր կենտրոնական հիմնարկ-



ների և պարտիայի պառակտման մասին: 1904 Թ.: Երկեր, հատ. VI, էջ 525— 537:

Ленин В. И. — Письмо А. А. Богданову и С. И. Гусеву. 11 февраля 1905 г. Соч. т. VII, стр. 100—103.

Ленин В. И.—Пора кончить. 1905 г. Соч. т. VII, стр. 40—43.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— ՌՍԴԲՊ մեջ տեղի ունեցած պառակտման համառոտ ուրվագիծը: Լենին և Ստալին.—Ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 129—135:

Ленин В. И.—Письма центральному комитету и отдельным его членам. 1903—1904 г.г. Соч. т. XXVIII, стр. 296—348.

Այս նամակներից հայերեն լույս են տեսել՝

ԼԵՆԻՆ Վ. Ի.— 1. Նամակ ԿԿ-ի անդամ Գ. Մ. Կրժիժանովսկուն (18/12 1903 Թ. Ժընև):
2. Նամակ ԿԿ-ի Ռուսաստանյան բյուրոյին 30/12 1903 Թ. Ընտիր երկեր վեց հատորի մեջ. Հատ. I, էջ 750—756:
3. Նամակ Կենտրոնական Կոմիտեին: ԿԿ-ի համար (հանձնել N N-ին):

(31 հունվարի, 1904 թ., Ժնև)։
4. Նամակ Ռուսաստանում գտնվող Կենտրոնական Կոմիտեի անդամներին։ (Փետրվար 1904 թ.)։
Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հատ. I, էջ 750—756, 760—763։

ՍՏԱԼԻՆ, Ի. Վ.— Լենինիզմի հիմունքների մասին։ VIII— Պարտիան։ «Լենինիզմի հարցերը», էջ 86—100։

(Շարունակելի)

---

**ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!**

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ), ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ։

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

*ՎՖ 01976* *Պատ. 1173, տիրաժ 5000*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի
և ամսագրերի տպարան, Երևան